Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 12 ՀՈՒՆԻՍ 1951

digitised by A.R.A.R.@

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ






Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78*


# ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՄԱՐՏԱԿԱՆ ԽՆԴԻՐԸ

*Սովետական Հայաստանի կոլտնտեսականները ազնիվ ու անձնվեր աշխատանքով առատ բերք են աճեցրել իրենց լայնատարած դաշտերում։ Այժմ կոլխոզային աշխատանքը թևակոխում է իր նոր ու չափազանց պատասխանատու շրջանը— բերքահավաքի ու պետական մթերումների շրջանը։*

*Ամեն մի կոլխոզի ամենաառաջնահերթ խնդիրն է՝ ժամանակին ու անկորուստ հավաքել բերքը, կատարել պետության հանդեպ ունեցած իր պարտավորությունը։*

*Կոլխոզի աշխատանքը չի վերջանում ցանքը ժամանակին կատարելով, կամ ցանածը լավ մշակելով։ Առավել կարևոր նշանակություն ունի բերքն անկորուստ հավաքելը։ Ցանքի ու մշակման բնագավառում կատարված աշխատանքը որևէ արժեք չի ու-*

1538-54

նենա, եթե բերքը չհավաքվի, չկատարվի պետական պարտավորությունը։

Բերքահավաքի նախապատրաստման ուղղությամբ տեղերում արդեն մեծ աշխատանքներ են կատարվել։Այժմ խնդիրն այն է, որ այդ աշխատանքներն ավարտվեն, եղած թերությունները հայտնաբերվեն և անհապաղ վերացվեն։ Ամենից առաջ անհրաժեշտ է ըստուգել մեքենա-տրակտորային կայանների վիճակը, պարզել, թե որքանով են պատրաստ նրանք բերքահավաքը հաջող սկսելու և ավարտելու համար։ Հարկավոր է ստուգել պահեստները, որտեղ փոխադրվելու է հացահատիկը։

Առանց բազմակողմանի կատարած նախապատրաստական աշխատանքի չի կարելի սկսել բերքահավաքի և մթերումների կամպանիան։

Բերքահավաքի նախապատրաստման և հաջող անցկացման գործում մեծ դեր է վիճակված կատարելու մեր գյուղական ագիտատորներին։ Այդ աշխատանքի հաջող ընթացքը կախված է նաև այն բանից, թե ինչ բարձրության վրա կդրվի քաղաքական-մասսայական, բացատրական աշխատանքը գյուղում։



Բոլշևիկյան ագիտացիան այս բնագավառում էլ պետք է կրի կոնկրետ ու գործնական բնույթ։ Նա իր առաջ մի խնդիր պետք է դնի՝ օգնել պարտիական, սովետական կազմակերպություններին, կոլխոզային բազմահազար աշխատավորությանը՝ ժամանակին ու բարձր որակով հավաքել սոցիալիստական դաշտերի առատ բերքը, կազմակերպել կալսումը, կատարել պետական պարտավորությունները։

Ահա այդ նպատակով պետք է գործի դրվեն ագիտացիոն-քաղաքական աշխատանքի բոլոր ձևերն ու մեթոդները։ Ինչպես ամեն մի ստեղծագործական աշխատանքում, այստեղ էլ պետք է հրաժարվել շաբլոնից։ Ագիտատորի զրույցը, ինչ թեմայի մասին էլ որ լինի, պետք է անցնի կենդանի ու հետաքրքիր, ունենա հարուստ բովանդակություն և կրի գործնական բնույթ։ Այդ զրույցները պետք է կառուցվեն կոլխոզների ամենօրյա հերոսական աշխատանքից բխած օրինակների ու փաստերի վրա։

Քաղաքական-մասսայական, ագիտացիոն-բացատրական աշխատանքի հիմնական օբեկտները պետք է լինեն կոլխոզային



digitised by A.R.A.R.@

բրիգադները, օղակները, որտեղ որոշվում է բերքահավաքի բախտը։

Մտածված ու խելացի կազմակերպված ագիտացիան կարող է շատ մեծ օգուտ բերել բերքն անկորուստ հավաքելու համար ծավալվող սոցիալիստական մրցումին։ Ամեն մի ագիտատորի սրբազան պարտքն է՝ մասսայականացնել բերքահավաքի առաջավորների փորձը, պատմել այդ փորձի մասին կոլխոզի մյուս բրիգադներում, նպատակ դնելով հասնել այն բանին, որպեսզի օր-օրի վրա ավելանա առաջավորների թիվը։ Սակայն, պատմելով այս կամ այն կոլխոզնիկի, օղակի, կամ բրիգադի օրինակելի աշխատանքի մասին, բավական չէ միայն նշել պլանի կատարողականը։ Ագիտատորը պետք է ձգտի բացահայտել լավ, օրինակելի, առաջավոր եռանդի, աշխատանքային փորձի ներքին բովանդակությունը։ Նա իր զրույցի մեջ պետք է որոշակի պատասխաններ տա թե աշխատանքի ի՞նչ մեթոդների գործադրմամբ է ձեռք բերված այդ փորձը, ի՞նչ է անհրաժեշտ անել, որպեսզի տարածվի այն կոլխոզային ավելի լայն մասսաների մեջ։

Ագիտացիոն աշխատանքը ամբողջությամբ



պետք է խպաս դրվի այս տարվա բերքահավաքի և հացամթերումների աշխատանքների կազմակերպման վերաբերյալ բոլշևիկների պարտիայի և սովետական կառավարության որոշումների անշեղ կատարման գործին։ Հարկավոր է հասնել այն բանին, որպեսզի յուրաքանչյուր կոլխոզնիկ հասկանա, որ կոլխոզային աշխատանքի ներկա էտապում առավել կարևոր բան չկա նրա համար, քան բերքն անկորուստ հավաքելը և պետական պարտավորությունը կատարելը։

Ագիտացիոն աշխատանքը, իհարկե, չի կարող սահմանափակվել միայն զրույցներով։ Ինչպես ասվեց վերևում, անհրաժեշտ է գործի դնել այդ աշխատանքի բոլոր ձևերն ու մեթոդները։ Այս տեսակետից չափազանց մեծ նշանակություն ունի ցուցադրական ագիտացիայի կազմակերպումը։ Պետք է գործն այնպես դասավորել, որ ամեն մի կոլխոզում, բրիգադում, ֆերմայում ժամանակին լույս տեսնեն պատի թերթերը, ագիտացիոն թերթիկները, ամենուրեք տարածվեն լոզունգներն ու պլակատները, աչքի ընկնող տեղերում դրվեն պատվո-տախտակներ, որոնց վրա ցույց տրվեն բերքահավաքի առաջավորների անունները, փակցվեն նրանց նկարները։



digitised by A.R.A.R.@

Գյուղական ագիտատորը պարտավոր է իր ունկնդիրներին սիստեմատիկաբար ծանոթացնել ամբողջ երկրում տեղի ունեցող իրադարձությունների, ինչպես նաև միջազգային կյանքում կատարվող կարևորագույն երևույթների հետ։ Այդ կարգի զրույցները նույնպես չեն կարող ընդհանուր բնույթ կրել, դրանք ևս պետք է կոնկրետ լինեն և սերտորեն կապակցվեն բերքահավաքի ու մթերումների աշխատանքներին։ Բոլշևիկ ագիտատորների կրակոտ խոսքը պետք է ոգևորի կոլխոզային դաշտերում աշխատող մարդկանց, հասցնի նրանց գիտակցությանը իրենց կատարած աշխատանքի վեհության գաղափարը, նրա միջազգային նշանակությունը։ Չէ՞ որ ամեն մի կոլխոզնիկ իր ազնիվ ու անձնվեր աշխատանքով է՛լ ավելի է ամրապնդում սոցիալիստական հայրենիքի տնտեսական ու ռազմական հզորությունը, և դրանով իր լուման է մտցնում խաղաղության ու երջանկության համար աշխարհի առաջադեմ մարդկության կողմից մղվող մեծ պայքարում։

Ռեսպուբլիկայի մի քանի շրջաններում արդեն սկսվել է բերքահավաքը։ Հնձված են կոլխոզային առատ բերքի առաջին հեկտարները, հարազատ սովետական պետու-



թյանն են հանձնված հացահատիկի առաջին տոնները։ Օր-օրի վրա աշխատանքի ծավալը լայնանում է, շուտով ամենուրեք կընդգրկի մասսայական հունձը։ Գյուղատնտեսական աշխատանքների այս պատասխանատու շրջանում մեր ագիտատորները պարտավոր են դրսևորել իրենց բոլոր կարողությունները և անեն այն ամենը, ինչ կարող է օգուտ բերել գործին։

Կասկած չկա, որ բերքահավաքի շրջանում, ինչպես ամեն տարի, այս տարի ևս մեր գյուղական ագիտատորների բազմահազար բանակը պատվով կկատարի իր առջև դրված մեծ ու պատասխանատու խնդիրները։

— Անկորուստ ու նշված ժամկետներին հավաքել սոցիալիստական դաշտերի բերքը, անթերի կատարել առաջին պատվիրանը՝ մթերումների պետական առաջադրանքը,— ահա այն նշանաբանը, որով կոլխոզային աշխատանքի այս էտապում պիտի առաջնորդվեն մեր պարտիական ու սովետական կազմակերպությունների ու նրանց հետ միասին ագիտատորները։



# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՎԵՐԵԼՔԸ

### Նյութեր զրույցների համար

## ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ

*Սովետական ժողովուրդը հաջողությամբ կատարեց հետպատերազմյան առաջին հնգամյա պլանը։ Կատարվեցին և գերակատարվեցին արդյունաբերության, տրանսպորտի, կապի, գյուղատնտեսության և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի վերականգնման և հետագա զարգացման առաջադրանքները։ 1950 թվականին Սովետական Միությունում արդյունաբերական արտադրանք է թողարկվել 73 տոկոսով ավելի, քան 1940 թվականին։*

*ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում հանճարեղ Ստալինի ղեկավարությամբ և օգնությամբ հնգամյակի տարիներին մեծ առաջադրանքների կատարման*



*համար անձնվիրաբար աշխատեց նաև Սովետական Հայաստանի աշխատավորությունը։ Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման 1946—1950 թվականների հետպատերազմյան հնգամյա պլանը հաջողությամբ կատարվեց։*

*Հնգամյակի ընթացքում առանձնապես մեծ չափերով զարգացավ ռեսպուբլիկայի արդյունաբերությունը։ Հնգամյա պլանի համաձայն Հայկական ՍՍՌ արդյունաբերական արտադրանքը 1940 թվականի համեմատությամբ պետք է ավելանար 210 տոկոսով, իսկ փաստորեն 1950 թվականի վերջում այն ավելացավ 2,6 անգամ։*

*Հնգամյակի ընթացքում հատկապես հաջող աճ ունեցավ մետաղամշակման, էլեկտրամեքենաշինական և դազգահաշինական արդյունաբերությունը։ Կառուցվել և շահագործման է հանձնվել ավելի քան 50 արդյունաբերական նոր ձեռնարկություն։ Դրանցից են էլեկտրամեքենաշինական, կոմպրեսորների, կաբելի, հիդրոտուրբինների, ավտոդողերի, ժամացույցի գործարանները, մի քանի քիմիական գործարաններ, մահուդի ֆաբրիկան, շաքարի գործարանը, կոնյակի նոր*



digitised by A.R.A.R.@

գործարանը, գուլպայի և տրիկոտաժի ֆաբրիկաները, Երևանի սառցարանը, յուղի-պանրի մի շարք գործարաններ և այլն։

Բանվորների և ծառայողների թիվը ռեսպուբլիկայում 1950 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, ավելացավ 60 տոկոսով, աշխատավարձի ֆոնդն ավելացավ 177 տոկոսով. բանվորների միջին աշխատավարձը 1940 թվականի համեմատությամբ համարյա կրկնապատկվեց։

Հետպատերազմյան հնգամյակում Սովետական Հայաստանի արդյունաբերության զարգացման բնորոշ առանձնահատկությունը հանդիսանում է ծանր ինդուստրիայի նոր ճյուղերի ստեղծումը և Հայաստանի ընդերքի բնական հարստությունների արդյունահանման և վերամշակման զգալի ընդարձակումը։ Արդյունաբերության այդ ճյուղերի ստեղծումն արմատապես փոխեց մեր ռեսպուբլիկայի ինդուստրիալ դեմքը։ Մեր արդյունաբերական ձեռնարկություններն սկսեցին թողարկել արտադրանքի այնպիսի տեսակներ, ինչպիսիք են՝ ուժային տրանսֆորմատորները, գեներատորները, մետաղահատ դազգահները, էլեկտրազոդիչ ապարատները, ավտոդետալները, էլեկտրասար-



քավորումները, էլեկտրոլիտային պղինձը, որոնք լայնորեն հայտնի են ռեսպուբլիկայի սահմաններից դուրս։ Ընդարձակվել են գունավոր մետալուրգիայի գոյություն ունեցող ձեռնարկությունները և ծավալվել է լեռնահանքային կոմբինատների շինարարությունը։

Քիմիական արդյունաբերության մեջ զգալի զարգացում է ստացել սինթետիկ կաուչուկի, ավտոդողերի, սոդայի և հանքային պարարտանյութերի արտադրությունը։

Հնգամյակի վերջում շինանյութերի արտադրությունը գերազանցեց նախապատերազմյան մակարդակը։ Շինարարական քարի հանույթը 1950 թվականին, համեմատած 1940 թվականի հետ, ավելացավ 3,4 անգամ, կղմինդրի արտադրությունը՝ 2,1 անգամ, ցեմենտի արտադրությունը՝ 1,6 անգամ։ Կազմակերպվել է լուսամուտի ապակու արտադրությունը։

Արտադրության միջոցներ արտադրող արդյունաբերության նոր ճյուղերի ստեղծմանը զուգընթաց, ընդարձակվեց և ավելի զարգացավ սննդի և թեթև արդյունաբերությունը։ Առաջ եկան արտադրության նոր տեսակներ՝ շաքարի արդյունաբերությունը, ձկնեղեն և



digitised by A.R.A.R.@

մսեղեն կոնսերվների, սառցարանային արդյունաբերությունը, մահուդի արդյունաբերությունը, բարձրորակ մետաքսյա գործվածքեղենի արդյունաբերությունը և այլն։ Բամբակեղեն գործվածքների արտադրությունը 1950 թվականին, համեմատած 1940 թվականի մակարդակի հետ, ավելացավ 1,3 անգամ, մետաքսյա գործվածքներինը՝ 6,9 անգամ, տրիկոտաժային սպիտակեղենինը՝ 1,5 անգամ, կաշվե կոշկեղենինը՝ երկու անգամ։

Հնգամյակի ընթացքում նոր, խոշոր զարկ ստացան տեղական արդյունաբերությունը և արհեստագործական կոոպերացիան։ Գործարկվեցին տեղական արդյունաբերության մի շարք ձեռնարկություններ, այդ թվում մեքենաշինական, նորոգման-մեխանիկական, հախճապակու, լաքի ու ներկի գործարանները, կահույքի ֆաբրիկան։ Յուրացվել է գյուղատնտեսական ինվենտարի, էլեկտրալուսավորման արմատուրայի, կերոսինկաների, ապակյա ու հախճապակյա ամանեղենի և լայն սպառման այլ ապրանքների մասսայական արտադրությունը։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության զարգացման մյուս բնորոշ առանձնահատկու-



թյունը նրա հագեցվածությունն է հայրենական ժամանակակից նոր տեխնիկայով։ Այդ արդյունաբերության բազայի վրա աճեցին որակյալ բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների բազմաքանակ սեփական կադրեր, որոնք հաջողությամբ օգտագործում են ժամանակակից բարդ տեխնիկան։

Հայկական ՍՍՌ-ի պայմաններում արդյունաբերության առաջատար ճյուղերի հետագա զարգացման և նոր ճյուղերի ստեղծման բազա է հանդիսանում հիդրոէլեկտրաէներգիան։ Գործող հիդրոէլեկտրակայանների կարողությունն ավելացնելու, ինչպես նաև Սևանի հիդրոէլեկտրակայանը, Ձորագէսի 3-րդ ագրեգատը շահագործման հանձնելու և մյուս էլեկտրակայանների աշխատանքը բարելավելու շնորհիվ ռեսպուբլիկայում էլեկտրաէներգիայի արտադրությունը 1950 թվականին, համեմատած նախապատերազմյան մակարդակի հետ, ավելացավ 2,4 անգամ և գերազանցեց հնգամյա պլանի առաջադրանքը։ Մեծ աշխատանքներ են կատարվել Գյումուշի խոշոր հիդրոէլեկտրակայանի շինարարության գծով՝ ռեսպուբլիկայի էներգետիկ բազան է՛լ ավելի ընդարձակելու համար։ Առաջիկա երկու տարում



digitised by A.R.A.R.@

կկրկնապատկվի Հայկական ՍՍՌ-ում արտադրվող էլեկտրաէներգիայի քանակը, որը կապահովի արդյունաբերության և գյուղատնտեսության հետագա, է՛լ ավելի հուժկու զարգացումը։ Բայց արդեն այժմ Հայկական ՍՍՌ-ն բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրանքի քանակով առաջ է անցել այնպիսի կապիտալիստական երկրներից, ինչպիսիք են Ֆրանսիան, Իտալիան և Ավստրիան։ Հայկական ՍՍՌ-ում բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնում է 710 կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, մինչդեռ Ֆրանսիայում ընկնում է 654, Ավստրիայում՝ 525, իսկ Իտալիայում՝ ընդամենը 426 կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։

Հետպատերազմյան հնգամյակի տարիներին արդյունաբերության բուռն զարգացումը հանգեցրեց արդյունաբերության նոր շրջանների ստեղծմանը, քաղաքների զարգացմանը, քաղաքային բնակչության աճմանը։ Խոշոր կոմունալ շինարարություններ կատարվեցին Լենինականում, Կիրովականում, Ալավերդում, Ղափանում, Գորիսում, Հոկտեմբերյանում, Ստեփանավանում, Էջմիածնում, որոնք դարձան է՛լ ավելի բարեկարգ ու կուլտուրական քաղաքներ։ Ստեղծ-



վեցին արդյունաբերական նոր ավաններ։

Մեծ փոփոխություններ տեղի ունեցան ռեսպուբլիկայի մայրաքաղաք Երևանում. կառուցվեցին մի շարք նոր ավաններ, կառուցվեցին բազմաթիվ գեղատեսիլ շենքեր, փողոցներ, ընդարձակվեց տրանսպորտը, ստեղծվեցին տրանսպորտի նոր տեսակներ։

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Հետպատերազմյան առաջին հնգամյա պլանի հաջող կատարման հետևանքով նոր հզոր վերելքի հասավ ռեսպուբլիկայի սոցիալիստական գյուղատնտեսությունը։

Կենսագործելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1947 թվականի Փետրվարյան պլենումի որոշումը, կոլխոզային գյուղացիությունը ձեռք բերեց հիանալի հաջողություններ. օրըստօրե բարձրանում է հողագործության կուլտուրան, աճել է սոցիալիստական գյուղատնտեսության նյութա-տեխնիկական բազան, բարձրացել է մեքենատրակտորային կայանների դերը կոլխոզային արտադրության մեջ, է՛լ ավելի աճել և ամրապնդվել է կոլխոզների հանրային տնտեսությունը։



digitised by A.R.A.R.@

Գերակատարվել է հնգամյա պլանի առաջադրանքը հացահատիկային կուլտուրաների բերքատվության և համախառն բերքի գծով։ 1950 թվականին հացահատիկային կուլտուրաների բերքը 53 տոկոսով բարձր էր, քան 1940 թվականին։ Կոլխոզներում հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը գերազանցեց 1940 թվականի մակարդակը 43 տոկոսով, այդ թվում ցորենի արտադրությունը՝ 39 տոկոսով։

Հետպատերազմյան ստալինյան հնգամյակի կատարման համար ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ առաջ եկան և աճեցին գյուղատնտեսական արտադրության հիանալի նորարարներ, բարձր բերքի առաջավորներ։ Հետպատերազմյան հնգամյակի ընթացքում մեծ նվաճումների հասան Ախուրյանի, Սիսյանի, Բասարգեչարի, Նոր Բայազետի և ուրիշ շրջանների կոլխոզնիկները։

Նոր Բայազետի շրջանի Բադիկյանի անվան կոլխոզը 1950 թվականին 917 հեկտար աշնանացանի ցանքերի յուրաքանչյուր հեկտարից ստացավ 20,48 ցենտներ բերք, իսկ առանձին բրիգադներ, ավելի բարձր



բերք ստացան։ Օրինակ, Ճաշիկ Տոնոյանի բրիգադը հեկտարից ստացավ 25,5 ցենտներ՝ 107 հեկտար տարածության վրա, Դրվիդոն Արզաքանդյանի բրիգադը՝ 23,09 ցենտներ՝ 103 հեկտար տարածության վրա և այլն։ Իսկ շրջանի Կարմիր Հոկտեմբեր գյուղի կոլխոզը 539 հեկտար հացահատիկի ցանքերի յուրաքանչյուր հեկտարից ստացավ 21,37 ցենտներ բերք։

Հնգամյակի ընթացքում տեխնիկական կուլտուրաների ցանքատարածությունն ավելացավ 17 տոկոսով, այդ թվում բամբակինը՝ 26 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 48 տոկոսով, ծխախոտինը՝ 29 տոկոսով։ Բամբակի համախառն բերքն ավելացավ 3,4 անգամ, ծխախոտինը՝ 2 անգամ, շաքարի ճակնդեղինը՝ 1,5 անգամ։ Բամբակի ցանքատարածություններն ավելացնելու ասպարեզում հնգամյա պլանի առաջադրանքը կատարվեց 1948 թվականին, իսկ բերքատվության ասպարեզում՝ 1949 թվականին։ Բամբակի բերքատվության գործում վերջին տարիներին լավագույն արդյունքներ են ձեռք բերել Հոկտեմբերյանի, Արտաշատի և Էջմիածնի շրջանների կոլխոզները։

Ռեսպուբլիկայի առաջավոր բամբակագործները բարձր բերք են աճեցնում։ Նրան-





digitised by A.R.A.R.@

ցից շատերն արժանացել են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչման։ Դրանցից են Հոկտեմբերյանի շրջանի Բամբակաշատ գյուղի Օրջոնիկիձեի անվան կոլխոզի օղակավարուհի Հեղինե Խաչատրյանը նույն կոլխոզի օղակավարուհի Անժիկ Խաչատրյանը և ուրիշներ։

Բոստանա-բանջարանոցային կուլտուրաների և կարտոֆիլի ցանքատարածությունը 1940 թվականի համեմատությամբ ավելացավ 63 տոկոսով։ Կարտոֆիլի համախառն բերքը կոլխոզներում նախապատերազմյան մակարդակը գերազանցեց 2,8 անգամ։

Ռեսպուբլիկայի կոլխոզները նշանակալի հաջողություններ են ձեռք բերել նաև ծխախոտի բերքատվության բարձրացման ասպարեզում։ Առանձնապես աչքի են ընկնում Իջևանի, Շամշադինի, Միկոյանի, Նոր Բայազետի ծխախոտագործները։

Գերակատարված է հնգամյա պլանի առաջադրանքը կոլխոզներում հանրային մթերատու անասունների գլխաքանակն ավելացնելու գծով։ 1950 թվականին կոլխոզներում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը նախապատերազմյան քանակից բարձր էր 27 տոկոսով, ոչխարներինն ու այծերինը՝ 72 տոկոսով, խոզերինը՝ 2,2 ան-



գամ, իսկ թռչուններինը՝ 3 անգամ։ Հնգամյակի տարիներին ռեսպուբլիկայի կոլխոզներում զգալի աշխատանք է տարվել անասունների ցեղայնությունը բարելավելու համար։

Հնգամյակի ընթացքում գյուղատնտեսության ձեռք բերած հաջողություններն անմիջականորեն կապված են այն բանի հետ, որ հսկայական չափով աճել է նրա բոլոր ճյուղերի տեխնիկական զինվածությունը։ Տրակտորային պարկի կարողությունը հնգամյակի տարիներին ավելացավ ավելի քան կրկնակի չափով։ Մեքենատրակտորային կայաններն էլ ավելի բարձրացրին իրենց արտադրողականությունը։ 1950 թվականին ռեսպուբլիկայի մեքենատրակտորային կայանները 45 տոկոսով ավելի շատ գյուղատնտեսական աշխատանք կատարեցին, քան 1940 թվականին։ Ռեսպուբլիկայի առաջավոր ՄՏԿ-ները, ինչպիսիք են Հոկտեմբերյանի, Շահրիարի, Ախուրյանի, Նոր Բայազետի, Բասարգեչարի, Նորակերտի և մի շարք ուրիշ ՄՏԿ-ներ, տարեց-տարի բարձրացնում են իրենց արտադրողականությունը, զգալի չափով տնտեսում են վառելանյութը։

Հետպատերազմյան հնգամյակի տարի-



digitised by A.R.A.R.@

ներին մեծ աշխատանք է կատարվել կոլխոզների, ՄՏԿ-ների և սովխոզների էլեկտրիֆիկացման ուղղությամբ։ Էլեկտրիֆիկացված կոլխոզների թիվը հնգամյակում ավելացավ 3 անգամ։ 1950 թվականի վերջերին էլեկտրիֆիկացված էր կոլխոզների ավելի քան երկու երրորդ մասը։ Աղինի, Իջևանի, Կիրովականի, Հոկտեմբերյանի, Էջմիածնի և ուրիշ շրջանների բոլոր կոլխոզները էլեկտրիֆիկացված են, իսկ Ջանգիբասարի, Բերիայի և ուրիշ շրջաններում կոլխոզների էլեկտրիֆիկացումը ավարտվելու վրա է։

Հնգամյակի ընթացքում խոշոր հաջողություններ են ձեռք բերվել հողագործության կուլտուրայի բարձրացման գործում։ Կոլխոզներում մեծ աշխատանք է ծավալվել խոտադաշտային ճիշտ ցանքաշրջանառություններ մտցնելու և յուրացնելու ուղղությամբ։ Լայնորեն արմատավորվում են դաշտերի, ցանքերի մշակության և բույսերի խնամքի գիտական-ագրոնոմիական եղանակները, օրգանական և քիմիական պարարտանյութերի կիրառումը։ 1950 թվականին տրակտորային ամբողջ հերկը կատարվեց նախախոփիկ ունեցող գութաններով։ Հացահատիկային կուլտուրաների ամբողջ ցանքը



կատարվում է տեսակավոր սերմերով։ 1950 թվականին կոլխոզների ցելահողերում կատարված գարնանացան կուլտուրաների ցանքը կազմեց ամբողջ ցանքատարածության 66 տոկոսը։

Ռեսպուբլիկայում մեծ աշխատանք է ծավալվել ջրովի հողերը ոռոգման նոր սիստեմին փոխադրելու ուղղությամբ։ Այդ աշխատանքը առանձնապես հաջող է ընթանում Արտաշատի, Իջևանի, Շամշադինի, Ախուրյանի շրջաններում։

Իրականացվել է իրրիգացիոն մեծ շինարարություն։ Կառուցվել և շահագործման են հանձնվել Ստորին Ջանգվի ջրանցքի առաջին հերթը, Կոտայքի ջրհան կայանը և մի շարք այլ ջրանցքներ։ Կառուցվել է Արփի լճի ջրավազանը։ Ծավալվել են Թալինի ջրանցքի կառուցման, ինչպես նաև Արարատյան դաշտի և Արազդայանի տափաստանի ճահճակալած հողերի ցամաքեցման ու յուրացման աշխատանքները։

Հետպատերազմյան տարիներին մեծ աշխատանք է կատարվել կոլխոզները կազմակերպորեն և տնտեսապես է՛լ ավելի ամրապնդելու ուղղությամբ։ Մեր պարտիայի ցուցումներով միջոցներ ձեռք առնվեցին հանրային հողերը շռայլումից պաշտպանե-



digitised by A.R.A.R.@

լու, կոլխոզներում աշխատանքի կազմակերպումը բարելավելու և վարձատրությունը կարգավորելու համար։ Ամրապնդվել են մշտական արտադրական բրիգադները, մանր կոլխոզները միացվեցին և ստեղծվեցին խոշոր տնտեսություններ։ Ամրապնդվեց աշխատանքային կարգապահությունը և բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը։ 1950 թվականին ռեսպուբլիկայի կոլխոզներում անբաժանելի ֆոնդերը, 1940 թվականի համեմատությամբ, ավելացան 2,9 անգամ։

Գյուղատնտեսության վերելքին զուգընթաց՝ անշեղորեն աճում է կոլխոզային գյուղացիության նյութական բարեկեցությունը, աճում նրա կուլտուրական մակարդակը։

Հետպատերազմյան տարիներին ՍՍՌՄ-ում մասսայական ապրանքների գների չորս անգամ կատարված իջեցման հետևանքով ապահովվեց էժանացված արդյունաբերական ապրանքներ գնելու համար նաև գյուղացիների ծախսերի լուրջ կրճատումը։ Այդ բանում դրսևորվեց ստալինյան հոգատարությունը սովետական ժողովրդի նկատմամբ։

Ոգեշնչված հետպատերազմյան ստալինյան հնգամյակի խոշոր հաջողություններով,



սոցիալիստական գյուղատնտեսության աշխատավորները լայն մրցություն են ծավալել 1951 թվականի գյուղատնտեսական աշխատանքների պլանները կատարելու և գերակատարելու համար։

Սովետական Հայաստանում արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման բնագավառում ձեռք բերված այս լուրջ հաջողությունները հնարավոր դարձան բոլշևիկյան պարտիայի լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության կենսագործման և ընկեր Ստալինի կողմից ցուցաբերված ամենօրյա հոգատարության շնորհիվ։

Բայց Սովետական Հայաստանի աշխատավորները չեն հանգստանում իրենց ձեռք բերած հաջողություններով։ Արդյունաբերական ձեռնարկություններում, տրանսպորտում, նորակառույցներում, կոլխոզային դաշտերում կատարած ստեղծագործ, նվիրված աշխատանքով նրանք պայքարում են մեր երկրում կոմունիզմ կառուցելու ստալինյան նախագծումները կենսագործելու համար։



digitised by A.R.A.R.@

# ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐՆ ՕԳՆՈՒՄ ԵՆ ԳՅՈՒՄՈՒՇԻ ՀԻԴՐՈԷԼԵԿՏՐԱԿԱՅԱՆԻ ԿԱՌՈՒՑՄԱՆԸ

Գյումուշի հիդրոէլեկտրակայանը մեր ռեսպուբլիկայի խոշորագույն նորակառույցներից է։

Հիդրոէլեկտրակայանի կառուցողները, սոցիալիստական մրցության նշանաբանի տակ պայքարում են շինարարության պլանները ժամկետից շուտ կատարելու և գերակատարելու համար։ Կառուցողների կոլեկտիվում սոցիալիստական մրցությունը լայնորեն ծավալելու, շինարարության առաջավոր մեթոդներն արմատավորելու և լավագույն կառուցողների աշխատանքային փորձը մասսայականացնելու գործում մեծ անելիքներ ունեն ագիտատորները։ Նրանք պետք է յուրաքանչյուր կառուցողի սեփականությունը դարձնեն հիդրոէլեկտրակայանի շինարարությունը հաջող ավարտելու վերաբերյալ ՀԿ(բ)Պ 15-րդ համագումարի որոշումները,



մոբիլիզացնեն նրանց ուժերը՝ այդ որոշումների անշեղ կատարման համար։

Հիդրոէլեկտրակայանի յուրաքանչյուր շինարարական տեղամաս ունի իր ագիտկոլեկտիվը, և այն տեղամասը, որտեղ լավ է աշխատում ագիտկոլեկտիվը, որտեղ ագիտացիոն-քաղաքական աշխատանքը իր բարձրության վրա է գտնվում, այնտեղ միշտ էլ ապահովված է պլանների կատարումն ու գերակատարումը։ Որպես օրինակ վերցնենք շինարարության գլխամասային հանգույցի պարտկազմակերպության Ախտայի առաջին տեղամասի ագիտկոլեկտիվը, որի ղեկավարն է ընկ. Կ. Համազասպյանը։

Այս ագիտկոլեկտիվն ունի իր աշխատանքի օրացուցային պլանը, որտեղ որոշակի կերպով նշված է ինչպես ամբողջ ագիտկոլեկտիվի, այնպես և առանձին օղակներում աշխատող ագիտատորների անելիքները առաջիկա մեկ ամսվա ընթացքում։

Ագիտկոլեկտիվն, ըստ իր պլանի, ամիսը երեք անգամ ունենում է սեմինար պարապմունքներ, որտեղ ագիտատորները ցուցում են ստանում, թե առաջիկա տասնօրյակում ինչ կարևոր խնդիրներ են դրված տեղամասի առաջ և ինչպես պետք է յուրաքանչյուր ագիտատոր իր աշխատամասում մոբիլիզացնի



digitised by A.R.A.R.@

կառուցողների ուժերը դրանց հաջող կատարման համար։ Մայիս ամսվա սեմինար պարապմունքի թեմաներն էին, օրինակ, «Հետպատերազմյան առաջին հնգամյա պլանի կատարման արդյունքները», «Հորատման շրջանակով փորատելու Ա. Ղազարյանի բրիգադի աշխատանքի փորձը» և «Սոցիալիստական մրցության արդյունքները առաջին տեղամասում և ինչպես մասսայականացնել այն»։ Վերջին թեմայի մասին զեկուցեց ինժեներ Խ. Դուրյանը։

Շինարարության պլանների կատարման, կառուցողների մեջ ագիտացիոն-քաղաքական աշխատանք ծավալելու գործում ագիտկոլեկտիվը հանդիսանում է տեղամասի պարտկազմակերպության անմիջական օգնականը։ Բերենք մի օրինակ։

Այս տարվա սկզբին առաջին թունելախորշում գործարկվեց մի նոր մեքենա, որի շնորհիվ միաժամանակ աշխատանքի մեջ դրվեցին 12 հորատող մուրճեր։ Առաջին շրջանում կառուցողները չէին կարողանում այդ մեքենան շահագործել իր ամբողջ կարողությամբ. թերակատարվում էին հորատման առաջադրանքները։ Պարտկազմակեր-



պությունը աշխատանքի ղեկավարների, հորատող վարպետների ու տախնիկական բանվորների մասնակցությամբ քննության առավ այդ հարցը և նշեց, որ մեքենան լրիվ չօգտագործելու հիմնական պատճառը դա հորատողների մեծ մասի կողմից նրա տեխնիկային չտիրապետելն է։ Պարտկազմակերպության առաջադրանքով նոր ագրեգատի վրա որպես աշխատանքի ղեկավար նշանակվեց լավագույն հորատող Ի. Նուժնին, մեքենայի տեխնիկան տիրապետած բանվորներից կազմվեց մի հերթափոխ։

Պարտիական կազմակերպությունը ագիտկոլեկտիվի առաջ խնդիր դրեց՝ բոլոր հերթափոխների հորատողների մեջ լայնորեն մասսայականացնել Ի. Նուժնիի և նրա հերթափոխի աշխատանքի փորձը։ Ագիտկոլեկտիվի հերթական սեմինար պարապմունքի ժամանակ կոնկրետ միջոցառումներ մշակվեցին պարտկազմակերպության առաջադրած խնդիրը կենսագործելու համար։

Նուժնիի ղեկավարած հերթափոխի աշխատանքն ուսումնասիրեցին նախ իրենք՝ ագիտատորները և ապա այդ մասին պատմեցին իրենց զրույցների ժամանակ։ Բացի այդ, մի



digitised by A.R.A.R.@

քանի անգամ իրենց ունկնդիրների հետ միասին շուտ գալով աշխատանքի, ագիտատորները հենց մեքենայի մոտ ցույց տվեցին, թե ինչպես է աշխատում լավագույն հերթափոխը։

Եվ ահա առաջավորների փորձի այսպիսի լայն մասսայականացումը տվեց իր հիանալի արդյունքները։ Տեղամասն սկսեց սիստեմատիկ կերպով կատարել ու գերակատարել իր պլանները։ Մայիս ամսին պլանի գերակատարումը հասավ 48 տոկոսի, իսկ հունիսի 10-ին, ժամկետից 20 օր շուտ, կատարվեց առաջին կիսամյակի առաջադրանքը։

Տեղամասի լավագույն ագիտատորներից են ընկերներ Ս. Բադալյանը, Մ. Միքայելյանը, Լ. Պողոսյանը, Վ. Բարսեղյանը և ուրիշներ։ Ագիտացիոն-մասսայական աշխատանքի համար նրանք օգտագործում են բազմապիսի ձևեր։ Նրանք մեծ ուշադրություն են դարձնում առաջավոր կառուցողների, հատկապես կոմունիզմի մեծ կառուցումների անվանի շինարարների փորձի փոխանակման գործին։ Դրա համար լայնորեն օգտագործում են պարբերական մամուլը, իրենց զրույցներին հրավիրում են ինժեներներին,



արտադրության ղեկավարներին՝ պատմելու սովետական նորագույն շինարարական տեխնիկայի, հայրենական գիտության նվաճումների մասին։

Իրենց աշխատամասերում ագիտատորները պատրաստել են հատուկ ցուցատախտակներ, որոնց վրա ամեն օր գրում են յուրաքանչյուր բանվորի և ամբողջ բրիգադայի նախորդ օրվա աշխատանքի ցուցանիշները։ Բանվորների և բրիգադների պլանների կատարման արդյունքների մասին ագիտատորները հայտնում են նաև իրենց զրույցների ժամանակ, վերլուծում նախորդ օրը տեղի ունեցած թերությունների պատճառները։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքի համար ագիտատորների ձեռքում լավ զենք են հանդիսանում նաև «Իլյիչովկա»-ները և պատի թերթը։ Առանձին հորատող բանվորների և բրիգադների վերցրած պարտավորությունների, նրանց կատարման ընթացքի վերաբերյալ թղթակցություններ տպագրելով, առաջավորներին խրախուսելով և հետ մնացողներին քննադատելով, ագիտատորները «Իլյիչովկա»-ների և պատի թերթի միջոցով



digitised by A.R.A.R.@

կարողանում են կառուցողների ուշադրությունը մշտապես կենտրոնացած պահել շինարարության պլանների կատարման և գերակատարման վրա։

Ախտայի տեղամասի թունելագործները այժմ պատվով են կատարում սոցիալիստական մրցությամբ ստանձնած իրենց պարտավորությունները, հորատման միջին առաջացումը օրական հասցնելով 3—3,5 մետրի։

Վ. ԱՎԱԳՅԱՆ

—o—

# ԱԳԻՏԱՑԻԱ ՀԱՑԱՀԱՏԻԿԻ ԲԱՐՁՐ ԲԵՐՔԻ ՀԱՄԱՐ

Բասարգեչարի շրջանը մեր ռեսպուբլիկայի հացահատիկային ամենախոշոր շրջաններից է։ Շրջանի կոլխոզային աշխատավորությունը անդուլ կերպով պայքարում է ռեսպուբլիկան սեփական հացով ապահովելու՝ մեր պարտիայի առաջադրանքը պատվով կատարելու համար։ Երբ նայում ես շրջանի դաշտերին, տեսնում ես, որ այս տարի այդ պայքարը նույնպես հիանալի արդյունք է տվել՝ փարթամորեն բարձրացած արտերը առատ բերք են խոստանում։

Շրջանի կոլխոզնիկները բարձր բերք են աճեցրել իրենց նվիրված աշխատանքի, սովետական առաջավոր ագրոտեխնիկայի կիրառման ու գյուղատնտեսական աշխատանքների մեծ մասի մեքենայացման շնորհիվ։

Բարձր բերքի համար մղվող պայքարում շրջանի կոլխոզային աշխատավորության



digitised by A.R.A.R.@

աշխատանքային խանդավառությունը կազմակերպելու, պարտիայի և կառավարության որոշումները նրանց սեփականությունը դարձնելու, գյուղատնտեսության առաջավորների փորձի լայն մասսայականացումը կազմակերպելու գործում զգալի աշխատանք է կատարել ՀԿ(բ)Պ շրջանային կոմիտեի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը։ Գյուղատնտեսական աշխատանքներին վերաբերող՝ պարտիայի և կառավարության վերադաս օրգանների, ինչպես նաև ՀԿ(բ)Պ Բասարգեչարի շրջկոմի յուրաքանչյուր որոշում և ցուցում կենսագործելու համար բաժինը մոբիլիզացնում է գյուղական ագիտկոլեկտիվներին, նրանց ցուցումներ է տալիս, թե ինչպես տեղերում կազմակերպել այդ որոշումների մասսայականացումը, ինչպես մոբիլիզացնել կոլխոզնիկների ուժերը այդ որոշումների կատարման համար։

Մի քանի օրինակներով ցույց տանք, թե բաժինը ինչպես է կատարում այդ։

Դեռ գարնան գյուղատնտեսական աշխատանքներն սկսվելուց առաջ պարտիայի շրջանային կոմիտեի բյուրոն իր ընդունած որոշման մեջ բաժնի առաջ խնդիր դրեց՝ ագիտացիոն-մասսայական լայն աշխատանքի



միջոցով բոլոր կոլխոզնիկների գիտակցությանը հասցնել, որ յուրաքանչյուր կոլխոզում կան զգալի քանակությամբ խամ հողեր, որոնց իրացումով կոլխոզը կավելացնի իր ցանքատարածությունները, հետևապես և հացահատիկի բերքը։

Ինչպե՞ս կազմակերպեց պարտշրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը այդ որոշման կենսագործումը։

Այն բանից հետո, երբ գարնանացանին նախապատրաստվելու մասին վերոհիշյալ որոշումը քննության առնվեց սկզբնական պարտկազմակերպությունների ժողովներում և կոլխոզներն սկսեցին խամ հողերի յուրացման աշխատանքները, պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը ստուգեց, թե որ կոլխոզի ագիտկոլեկտիվն է այդ ասպարեզում աշխատանքի լավագույն օրինակ ցույց տալիս։ Այդպիսի ագիտկոլեկտիվներից ընտրվեցին երեքը՝ Կարճաղբյուր, Ակունք և Ջաղքյանդ գյուղերի կոլխոզների ագիտկոլեկտիվները։ Այդ երեք կոլխոզները շատ կարճ ժամանակում յուրացրել էին մոտ 350 հեկտար խամ հող։

Ապա բաժինը հրավիրեց ագիտկոլեկտիվների ղեկավարների շրջանային խորհրդակ-



digitised by A.R.A.R.@

ցություն, որտեղ այդ գյուղերի ագիտկոլեկտիվների ղեկավարներ, ընկ. ընկ. Գ. Ղազարյանը, Ս. Թադևոսյանը և Ջ. Հանաֆաևը պատմեցին, թե ինչպես են իրենց ագիտատորները խամ հողերի յուրացման գործում օգնում կոլխոզնիկներին։ Ապա ելույթներ ունեցան մի շարք ագիտկոլեկտիվների ղեկավարներ և ասացին, որ այդ լավ փորձը կկիրառեն նաև իրենց մոտ։ Եվ իրոք, այդ խորհրդակցությունից հետո ագիտկոլեկտիվները արդյունավետ զգալի աշխատանք կատարեցին խամ հողերը յուրացնելու համար կոլխոզնիկների ուժերը մոբիլիզացնելու ուղղությամբ։

Որպես օրինակ կարելի է բերել Բասարգեչար գյուղի «Կարմիր նոյեմբեր» կոլխոզը, ուր կոլխոզնիկները մեծ ոգևորությամբ մի քանի օրում յուրացրին ավելի քան 200 հեկտար խամ հող։ Այդ աշխատանքներին բարձր խանդավառությամբ մասնակցեցին նաև շրջկենտրոնի բանվոր-ծառայողները։ Գործի այդքան լավ կազմակերպմանը մեծապես օգնել էին գյուղի ագիտատորները։

Ահա ևս մեկ ուրիշ օրինակ՝ բերքի մշակման շրջանից։

Բասարգեչար գյուղի կոլխոզը որոշել էր



ջրատար մեծ առու փորել մինչև Ակունք գյուղը և այնտեղի ջրերով ոռոգելի դարձնել 200 հեկտար ցորենի դաշտ։ Պարտիայի շրջանային կոմիտեն հանձնարարեց պրոպագանդայի և ագիտացիայի բաժնին՝ քաղաքական-բացատրական աշխատանքով կոլխոզնիկների նախաձեռնությունը մասսայականացնել շրջկենտրոնի բանվոր-ծառայողների կոլեկտիվներում և վերջիններիս կողմից օգնություն կազմակերպել կոլխոզին։

Պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը շրջկենտրոնի ագիտատորների խորհրդակցությունում քննության դրեց այդ հարցը. կոնկրետ միջոցառումներ մշակվեցին պարտշրջկոմի որոշումը կատարելու համար։ Եվ ահա ջրատար առվի շինարարության վրա, կոլխոզնիկների հետ միասին, աշխատանքի դուրս եկան շրջկենտրոնի մեծ թվով բանվոր-ծառայողներ։ Խանդավառ աշխատանքը փայլուն արդյունքներ տվեց. աշխատանքային 5 օրում ավարտվեց չորս կիլոմետր երկարությամբ ջրատար առուն և հացահատիկի 200 հեկտար անջրդի հողեր ոռոգելի դարձան։

Բասարգեչարի շրջանի երկու մեքենա-տրակտորային կայաններն էլ կազմ ու պատ-



digitised by A.R.A.R.@

*րատ սպասում են բերքահավաքին։ Բայց մեքենաները և գյուղգործիքները ժամանակին բերքահավաքի համար նախապատրաստելը դեռ չի նշանակում, որ ապահովված է բերքը սեղմ ժամկետներում և անկորուստ հավաքելը։ Ամեն ինչ կախված է նրանից, թե ինչպես կաշխատեն կոմբայնավարները, տրակտորիստները և մյուս մեխանիզատորները։*

*ՀԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն վերջերս նշեց, որ Բասարգեչարի երկու ՄՏԿ-ներում էլ կան շատ լավագույն մեխանիզատորներ, բայց նրանց աշխատանքային փորձը վատ է մասսայականացվում, այն բոլոր մեխանիզատորների սեփականությունը չի դարձվում։*

*Պարտշրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը ձեռնամուխ է եղել ՀԿ(բ)Պ Կենտկոմի նշած այդ թերությունների վերացման գործին։ Շրջանի երկու մեքենատրակտորային կայանների ագիտկոլեկտիվների միացյալ խորհրդակցությունում բաժինը քննության դրեց բերքահավաքի շրջանում մեխանիզատորների մեջ ագիտացիոն-մասսայական աշխատանքը կազմակերպելու և առաջավորների փորձի փո-*



*խանակման հարցերը։ Խորհրդակցությունում արված առաջարկությունների հիման վրա բաժինը, ագիտկոլեկտիվների ղեկավարների մասնակցությամբ, կազմեց ՄՏԿ-ներում բերքահավաքի ընթացքում ագիտացիոն-մասսայական աշխատանքը կազմակերպելու, առաջավորների փորձը լայնորեն մասսայականացնելու աշխատանքային պլան։*

*Այդ պլանային աշխատանքի առաջին արդյունքները արդեն երևում են։ Ագիտատորների կողմից անվանի տրակտորիստներ Գ. Կարապետյանի, Վ. Սահակյանի, Ա. Սարգըսյանի, Ռ. Կարապետյանի աշխատանքային փորձի լայն մասսայականացման շնորհիվ ՄՏԿ-ների արդեն 12 տրակտորիստներ սկսել են կատարել նրանց արտադրական նորմաները։*

Ջ. ՍՈՒԼԹԱՆՈՎ



digitised by A.R.A.R.@

# ՏԱՅՎԱՆԸ ՉԻՆԱՍՏԱՆԻ ԱՆԲԱԺԱՆԵԼԻ ՄԱՍՆ Է

*Ամերիկյան իմպերիալիստներն, սկսելով արյունալի պատերազմ Կորեայում, միաժամանակ կատարեցին հանցագործ ագրեսիայի ակտ չինական ժողովրդի դեմ։*

*Պրեզիդենտ Տրումենի 1950 թ. հունիսի 27-ի հրամանով, Ամերիկայի Միացյալ Նահանգների 7-րդ նավատորմը մտավ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկային պատկանող Տայվան կղզու տերիտորիալ ջրերը։*

*Դրա հետ մեկտեղ Տայվան եկավ նաև ամերիկյան 13-րդ ավիամիավորումը։ Այսպիսով, ԱՄՆ-ը ակ-տի կերպով ավարտեց այն կղզու զավթումը, որը դարերից ի վեր հանդիսանում էր Չինաստանի անբաժանելի մասը։*

*Տայվան կղզին (Ֆորմոզա) գտնվում է չինական Ֆուցզյան նահանգի մոտ, որից նա բաժանվում է 140-ից մինչև 200 կիլոմետր լայնություն ունեցող Տայվանի (Ֆորմոզայի) նեղուցով։ Հյուսիսից դեպի հարավ կղզին տարածված է 400 կիլոմետր երկարությամբ, իսկ արևմուտքից դեպի արևելք՝ մինչև 150 կիլոմետր։*



*Տայվանի ընդհանուր մակերեսը, Տայվանի նեղուցում տեղավորված Պենխուլեդյան (Պեսկադորյան) կղզիների հետ միասին կազմում է 35.900 քառակուսի կիլոմետր, այսինքն ավելի մեծ է, քան Հոլանդիայի տերիտորիան և փոքր ինչ զիջում է Շվեյցարիայի տերիտորիային։*

*Կղզու ամբողջ երկայնությամբ, հյուսիսից դեպի հարավ, ձգվել են երկու լեռնաշղթա, որոնց գագաթները հասնում են մինչև 4 հազար մետրի։*

*Արևելքում լեռները միանգամից բարձրանալով, արևմտյան կողմում իջնում են և աստիճանաբար փոխվում բլրաշատ դաշտավայրի։ Լեռնաշղթաների միջև տարածվում են ոչ լայն հովիտներ և խորը ձորեր։*

*Տայվանի բնությունը սքանչելի է։*

*Առաջին անգամ կղզին այցելած եվրոպական ծովագնացները՝ փորթուգալացիները,— անվանեցին նրան «Ֆորմոզա», որը փորթուգալերեն նշանակում է «չքնաղ»։*

*Չինարեն «Տայվան» անվանումը նշանակում է «ծովածոց, որը շրջապատված է դարատափերով»։ Տայվանի կլիման արևադարձային է։ Ամառը տաք է, երկար տևողությամբ և առատ տեղումներով։ Ձերոյից ցած ջերմաստիճանը այստեղ հազվագյուտ երևույթ է։ Առավել բարձր լեռների գագաթները չնչին չափով են ձյունապատվում։*

*Ջերմաստիճանային բարենպաստ պայմանների շնորհիվ, գյուղատնտեսական կուլտուրաները Տայվանում*



digitised by A.R.A.R.@

արագ են հասունանում. բրինձը տարվա ընթացքում երկու անգամ է բերք տալիս, ըստ որում հաջողվում է նաև այդ նույն դաշտից ստանալ երկրորդ՝ բանջարեղենի բերք։

Տայվանի ծովափը քիչ է կտրտված, որի պատճառով նրա ամբողջ 1300 կիլոմետր երկարության վրա կան միայն երեք լավ նավահանգիստներ— Ցզիլունը, Գաոսյունը և Սուաոն։

Ավելի շատ և լավ բնական նավահանգիստներ կան Պենխուլեդաո կղզիների վրա, որոնցից կարևորն է Մարդուն նավահանգիստը։

Պենխուլեդաոյի նավահանգիստները նախկինում օգտագործվում էին ճապոնացիների կողմից, իսկ այժմ ամերիկացիներն են օգտագործում դրանք, որպես ռազմածովային բազաներ։

Տայվանի բոլոր գետերը սկիզբ են առնում լեռներից, խիտ, արևադարձային թփուտներում և սրընթաց հոսանքով իջնում ներքև։

Գետերն այստեղ կարճ են, հոսանքն՝ արագ, նրանք ունեն հիդրոէներգիայի հսկայական պաշարներ։

Տայվանն աչքի է ընկնում բուսականության հարստությամբ, նրա մակերեսի երկու երրորդը ծածկված է խիտ, արևադարձային անտառներով։ Նրանց մեջ աճում են՝ բամբուկը, սև ծառը, կամֆարայի ծառը, խցանի ծառը, փանդանյան արմավենիներ, ծառանման ճարախոտեր և շատ այլ տեսակներ։

Տայվանի բնական հարստություններից ամենաար-



ժեքավորներն են՝ ածուխը, նավթը, ոսկին, պղինձը և աղը։

Ճապոնական տիրապետության ժամանակ, կղզու գյուղատնտեսության մեջ գլխավոր տեղ էին գրավում բրինձը և շաքարեղեգը։

Այստեղ մշակում են նաև անանաս, բանան և այլ արևադարձային բույսեր։

Երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրյակին Տայվանից Ճապոնիա էր ներմուծվում ամբողջ բրնձի բերքի մոտ կեսը և շաքարեղեգի արտադրանքի 95 տոկոսը։ Տեղական բնակչությունը մատնված էր սովի և աղքատության։

Կղզու լավագույն հողերը պատկանում են խոշոր կալվածատերերին և կապիտալիստական ընկերություններին, գյուղացիական ընտանիքների 43 տոկոսն ունի միջին հաշվով մեկ քառորդ հեկտար հող, գյուղական ազգաբնակչության համարյա 38 տոկոսը բոլորովին հող չունի և վարձակալում է այն կալվածատերերից ու կուլակներից։

Տայվանի հսկայական անտառային հարստություններից, որոնք ներկայումս հափշտակված են ամերիկյան մոնոպոլիաների կողմից, հատուկ նշանակություն ունի կամֆարայի ծառը։ Չնայած կամֆարայի անտառների մակերեսը խիստ կրճատվել է՝ գիշատիչ անտառահատման հետևանքով, այնուամենայնիվ, ներկայումս Տայվանին է պատկանում



digitised by A.R.A.R.@

կամֆարայի համաշխարհային արտադրության ճըն-շող մասը։

Տայվանի արդյունաբերության կարևորագույն ճյուղըն է հանդիսանում շաքարի արդյունաբերությունը։ Նա կենտրոնացած էր մի քանի ճապոնական ընկերությունների ձեռքում, որոնցից ամենամեծի՝ «Տայվան Սեյտո»-ի գլխավոր ակցիոները հանդիսանում էր ճապոնական կայսրը։

Տայվանում կան մի քանի խոշոր մետալուրգիական գործարաններ, հիդրոէլեկտրակայաններ և ջերմաէներգետիկ կայաններ, որոնք աշխատում են տեղական ածխի վրա։

Տայվանում բավականին զարգացած է նաև քիմիական արդյունաբերությունը։ Տայվանի ծանր արդյունաբերությունն աշխատում էր ճապոնացիների ժամանակ և շարունակում է ներկայումս աշխատել՝ հիմնականում օկուպանտների ռազմական նպատակների համար։

Ներկայումս Տայվանի ազգաբնակչությունը կազմում է մոտ 6,5 միլիոն մարդ։ Կղզու բնակիչների ճնշող մեծամասնությունը, մոտ 95 տոկոսը, կազմում են չինացիները։ Բացի չինացիներից, այստեղ ապրում են համեմատաբար չնչին թվով մալայացիներ, որոնք կազմում են կղզու ազգաբնակչության միայն 2 տոկոսը։

Չինական Ֆուցզյան և Գուանդուն նահանգներից



գաղթած չինացիները բնակություն են հաստատել Տայվանում դեռևս 6-րդ դարում։

Այսպիսով, հնագույն ժամանակներից, կղզին իրենից ներկայացնում է Չինաստանի անբաժանելի մասը, ոչ միայն քաղաքականապես, այլ նաև իր ազգային կազմով։

17-րդ դարի սկզբին այն ժամանակների խոշոր գաղութային երկրներ Հոլանդիան և Իսպանիան փորձեր էին կատարում հիմնավորվել Տայվանում։ Բայց այդ բոլոր զավթիչները վտարվել են կղզուց Չինաստանի զինված ուժերի միջոցով։

Անցյալ հարյուրամյակի հիսունական թվականներին ամերիկյան ծովային սպա Պերրին, իր հրամանատարության տակ ունենալով նավախումբ, որը գործում էր Արևելյան Ասիայի ջրերում, պնդում էր, որպեսզի Տայվանը հայտարարվի ԱՄՆ-ի կիսագաղութ։ Սակայն ամերիկյան զավթիչներին չհաջողվեց իրականացնել այդ նախագիծը։

Ճապոնական սամուրայները փորձ էին կատարում զավթել Տայվանը դեռ 1874 թվին, բայց այդ փորձը տապալվեց։ Ճապոնական զավթիչները, որոնց շարքերում գործում էր նաև ամերիկյան ռազմական ջոկատ, վտարվեցին կղզուց։

Դրանից 20 տարի անց, որի ընթացքում Ճապոնիան շարունակում էր տենդորեն զինվել, ավազակային հարձակում գործեց Չինաստանի վրա, որի հետևանքով նրան հաջողվեց զավթել Տայվանը։



digitised by A.R.A.R.@

Կղզու բնակչությունը չէր ցանկանում հաշտվել ճապոնական գաղութային ճնշման և Չինաստանից անջատվելու հետ։

1895 թվի մայիսին Տայվանում տեղի ունեցավ ժողովրդական ապստամբություն։

Կղզու բնակչությունը հռչակեց Տայվանական Ռեսպուբլիկա, որը տևեց միայն 19 օր։ Ճապոնական նվաճողները խեղդեցին տայվանական ռևոլյուցիան արյան ծովում։

Սակայն Տայվանի բնակչության ազգային-ազատագրական պայքարը ճապոնական ստրկացնողների դեմ չդադարեց։ Հատկապես մեծ չափերի հասավ այն 1918—1919 թվերին՝ հեռավոր Տայվանը հասած Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի որոտների անմիջական ազդեցության տակ։

1945 թվի ամռանը Սովետական Բանակի կողմից ճապոնական միլիտարիզմի ջախջախումից հետո, Տայվանում վերջ տրվեց ճապոնական տիրապետությանը։

Համաձայն 1943 թվին տեղի ունեցած Կահիրեյի կոնֆերենցիայի որոշումների և 1945 թ. հուլիսի 26-ի Պոտսդամի դեկլարացիայի, ճապոնացիների կողմից հափշտակված Տայվանը նորից միացվեց Չինաստանին։

Իմպերիալիստական Ճապոնիայի ջախջախումը ազատության արշալույս ազդարարեց Տայվանի բնակչությանը։

Սակայն ճապոնական զավթիչների վտարումից ան-



միջապես հետո, Տայվանը դրվեց նոր լծի՝ ամերիկյան իմպերիալիզմի և նրա գոմինդանական գործակալների լծի տակ։

ԱՄՆ-ի հետախուզական ծառայության աշխատակիցները, Ճապոնիայի կապիտուլյացիայի հաջորդ իսկ օրը, սկսեցին զբաղվել Տայվանի ռազմատնտեսական հնարավորությունների հետախուզությամբ։ 1948 թ. փետրվարին Չան Կայ-շին ամերիկյան ինտերվենտների հետ ստորագրեց ստրկացնող համաձայնագիր, որով ամերիկյան մոնոպոլիստները դարձան կղզու բոլոր հարստությունների տերերը։

«Վեստինգաուզ էլեկտրիկ» տրեստը լրիվ վերահսկողություն դրեց կղզում եղած 34 կարևորագույն էլեկտրակայանների վրա։ Ալյումինի գործարաններն անցան ամերիկյան «Ռայնոլդս- մետալս-կոմպանի» մոնոպոլիային։

Ամերիկյան կապիտալիստներն իրենց թաթը դրեցին նաև կղզու քիմիական և սննդի արդյունաբերության վրա, նրա ֆինանսների, երկաթուղային գծերի և գյուղատնտեսության վրա։ Տայվանում սկսեցին ուժգին կերպով հիմնվել կալվածքներ, որոնք ամերիկյան «մասնագետների» վերահսկողության տակ զբաղվում են ԱՄՆ-ին անհրաժեշտ գյուղատնտեսական կուլտուրաների և, առաջին հերթին, ամբողջ շաքարեղեգնի մշակմամբ։ Բրնձի ցանքատարածությունը խիստ կրճատված է։ Կղզու բնակչությունը ներկայումս ստիպված է կերակրվել քաղցր կարտո-



digitised by A.R.A.R.@

ֆիլի (բատատ) տերևներով և ցողուններով։ Տայվանի բնակչության աղքատացումն ավելի է սաստկանում գործազրկության, հարկերի և զանազան տուրքերի խիստ աճման հետևանքով, որոնք դրվում են բնակչության վրա ամերիկյան վարձկանների՝ գոմինդանականների կողմից։

Ամերիկյան կապիտալիստները, գոմինդանական դավաճանների հետ միասին, քայքայում են Տայվանի ժողովրդական տնտեսությունը։ Շատ արդյունաբերական ձեռնարկություններ փակված են։

Տայվանի ընդհանուր արտադրական մակարդակը մինչպատերազմյան մակարդակի հազիվ 40 տոկոսն է կազմում։ Կղզում եղած գործազուրկների թիվն արդեն անցած տարվա սկզբին 800 հազար մարդուց ավելի էր։

Տայվանում 1949 թվին իրենց վերջին ապաստարանն են գտել Չինական ժողովրդա-ազատագրական բանակի կողմից ջախջախված Չան Կայ-շիի բանդայի մնացորդները։ Ամերիկյան խնամակալները մատակարարում են նրանց զենքով, որոնց թվում նաև տանկերով և ինքնաթիռներով։ Ամերիկյան զավթիչները ղեկավարում են գոմինդանական վարձկաններին իրենց «խորհրդականների» միջոցով։ Ոչ ուշ քան այս տարվա ապրիլ ամսին ԱՄՆ-ի պաշտպանության մինիստրը հայտարարեց, որ Չան Կայ-շիի զորքերի հրահանգավորման համար, Տայվան է ուղարկվում



ամերիկյան սպաների և զինվորների մի նոր, մեծ խումբ։

Օկուպացիայի ենթարկելով Տայվանը ամերիկյան իմպերիալիստները այն վեր են ածել բազայի՝ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի վրա հարձակում գործելու համար։ Ռազմական պատրաստությունը կղզում հատկապես ուժեղացավ ամերիկյան ինտերվենտների՝ Կորեա ներխուժելուց հետո։

ԱՄՆ-ի կառավարողների ճնշման ներքո, Միավորված Ազգերի կազմակերպության Գլխավոր Ասամբլեան 1950 թվի դեկտեմբերին ընդունեց մի բանաձև, որով Չինական Ժողովրդական ռեսպուբլիկան հայտարարվել է իբրև ագրեսոր։ Այդ խայտառակ և զրպարտիչ որոշումը բոլոր երկրներում առաջ բերեց միլիոնավոր ազնիվ մարդկանց խիստ զայրույթը և վրդովմունքը։ «Պրավդա»-ի թղթակցի հետ ունեցած զրույցի ժամանակ ընկեր Ստալինն ասաց.

«Իրոք, հարկավոր է կորցնել խղճի վերջին մնացորդները՝ պնդելու համար, որ Ամերիկայի Միացյալ Նահանգները, որոնք զավթել են չինական տերիտորիա՝ Տայվան կղզին, և ներխուժել են Կորեա՝ դեպի Չինաստանի սահմանները,— հանդիսանում են պաշտպանվող կողմը, իսկ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան, որը պաշտպանում է իր սահմանները և ջանում է իրեն վերադարձնել ամերիկացիների զավթած Տայվան կղզին, հանդիսանում է ագրեսոր»։

Մեծ չինական ժողովուրդը tի է վճռականությամբ՝



digitised by A.R.A.R.@

վտարելու Տայվան կղզուց ամերիկյան զավթիչներին և նրանց գոմինդանական մնացորդներին։

Կղզու բնակչությունն ատում է ամերիկյան օկուպանտներին և Չան Կայ-շիի կլիկին։ 1947 թվի փետրվարի 27-ին Տայվանում բռնկված հսկայական ապստամբությունը ցույց տվեց, որ կղզու բնակչությունը, որը 50 տարվա ընթացքում հերոսական պայքար է մղել ճապոնական զավթիչների դեմ, չի հանդուրժի նաև ամերիկյան իմպերիալիստների և նրանց գոմինդանական գործակալների տիրակալությունը։ Չան Կայ-շիին մեծ դժվարությամբ հաջողվեց ճնշել այդ ապստամբությունը։ Չնայած բնակչության նկատմամբ գոմինդանականների կողմից կիրառվող գազանային դատաստաններին, կղզում աճում է վրդովմունքը ամերիկյան զավթիչների և չանկայշիական վարձկանների դեմ։

Ավելի ու ավելի մեծ չափերի է հասնում Տայվանում պարտիզանական շարժումը։ Կասկած չկա, որ ամբողջ չինական ժողովրդի օգնությամբ, կղզու բնակչությունը կազատագրվի ամերիկյան իմպերիալիզմի լծից։

Բ. ԱԼԵՔՍԱՆԴՐՈՎ

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.*

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Երիտասարդության միությունների խնդիրները: *25 էջ, գինը 25 կոպ.։*

Կ. ՕՍՏՐՈՈՒԽՈՎԱ.— ՌՍԴԲՊ Համառուսաստանյան վեցերորդ (Պրագայի) կոնֆերենցիան: *153 էջ, գինը 2 ռ.։*

*Կ. ՊՈԼՋԻԿՈՎԱ—ՌՈՒԲԵՑ.—* Նրանք սովորում էին Լենինգրադում: *268 էջ, գինը 6 ռ. 40 կոպ.։*

Ա. ԵՍԱՅԱՆ.— Ինչպես օղակավարուհի Սիսե Կարապետյանը 6 հեկտար ցանքից ստացավ 444 ցենտներ բամբակ: *15 էջ, գինը 25 կոպ.։*

Գ. ԱՎԱՆԵՍՈՎ.— Աշխատանքի լավ կազմակերպումը բամբակի բարձր բերքի երաշխիք է: *10 էջ, գինը 15 կոպ.։*

Մ. Հ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ.-- Ոչխարների ու այծերի խուզման և բրդի տեսակավորման գործի կազմակերպումը: *48 էջ, գինը 99 կոպ.։*

Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

digitised by A.R.A.R.@

